Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ

№ 20 ՀՈԿՏԵՄԲԵՐ 1957

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ



Տեղեկանք



---

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԳ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս՝ 2—52—78։



## ՆՅՈՒԹԵՐ ԶԵԿՈՒՅՈՒՄՆԵՐԻ ԵՎ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

# ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՆ ԵՎ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՎԵՐԱԾՆՈՒՆԴԸ

Քառասուն տարի առաջ՝ 1917 թվականի հոկտեմբերի 25-ին (նոյեմբերի 7-ին) Ռուսաստանի ռևոլյուցիոն բանվորներն ու գյուղացիները, Վ. Ի. Լենինի ստեղծած բոլշևիկների պարտիայի ղեկավարությամբ, տապալեցին կապիտալիստների ու կալվածատերերի անարգ տիրապետությունը և իրենց ձեռքը վերցրին քաղաքական իշխանությունը։

Հաղթանակեց Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան, որը նոր դարագլուխ բաց արեց մարդկության պատմության մեջ՝ կապիտալիզմի կործանման, կոմունիզմի հաղթանակի դարագլուխը։

Մինչև Մեծ Հոկտեմբերի պատմական հաղթանակը, Ռուսաստանի բանվոր դասակարգը և աշխատավոր գյուղացիությունը







պայքարի երկար ճանապարհ էին անցել, նրանք թրծվել ու կոփվել էին ռուսական առաջին ու երկրորդ ռևոլյուցիաների բովում և պայքարի հսկայական փորձ էին կուտակել։ Այդ փորձն իզուր չանցավ։ Պրոլետարիատը վճռական կռիվ հայտարարեց շահագործող դասակարգերի՝ կապիտալիստների ու կալվածատերերի դեմ, ազգային ճնշման դեմ։ Այդ պայքարը պսակվեց համաշխարհային-պատմական հաղթանակով, Սովետական իշխանության հաստատումով։

Մարդկային պատմության մեջ անցյալում էլ քիչ ռևոլյուցիաներ չեն եղել, բայց նրանցից և ոչ մեկը չի կարելի համեմատել իր մասշտաբներով ամենավիթխարի, իր խնդիրներով ու նպատակներով ամենախոր Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հետ։

Անցյալի ռևոլյուցիաների ժամանակ փոխվում էին իշխանության գլուխ կանգնած շահագործող դասակարգերը, փոխվում էին շահագործման ձևերը, իսկ շահագործումը մնում էր։ Եվ ամեն մի այդպիսի ռևոլյուցիայից հետո իշխանությունը նվաճած շահագործողներն առավել կատաղի ու վրեժխնդիր էին դառնում շահագործվող, ազատության ձգտող միլիոնավոր աշխատավորների նկատ-



մամբ։ Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիան ոչ միայն ազդարարեց, այլև իրականացրեց սոցիալիզմի, խաղաղության, ժողովուրդների իրավահավասարության ու բարեկամության անմահ գաղափարները։

Պատմական կարճ ժամանակամիջոցում սովետական ժողովուրդը մեծ հաղթանակներ ձեռք բերեց երկրի ժողովրդական տնտեսության և կուլտուրայի բոլոր բնագավառներում։ Կապիտալիստների ու կալվածատերերի իշխանության տապալումը և սոցիալիստական նոր հասարակարգի ստեղծումը հնարավորություն տվեցին երկրի արտադրողական ուժերի աննախընթաց զարգացման ու վերելքի համար։

Իր հոգևարքի մեջ գալարվող կապիտալիստական աշխարհը ոչ մի կերպ չէր ուզում հաշտվել նոր հասարակարգի ծննդյան պատմական փաստի հետ, ուստի և ամեն կերպ ձգտում էր ոչնչացնել այն, վերադարձնել հինը։ Սակայն չարդարացան մեր երկրի արտաքին ու ներքին թշնամիների հաշիվները։ Սովետական մարդիկ օտարերկրյա ինտերվենտների դեմ մղած պայքարում, քաղաքացիական կռիվների ու այնուհետև Հայրենական Մեծ պատերազմի հրդեհներում պաշտպանեցին իրենց սոցիալիստական Հայրենիքը

և ջախջախեցին նրա վրա ձեռք բարձրացրած բոլոր թշնամիներին։

Սովետական Միությունը դեռևս երկրորդ համաշխարհային պատերազմի նախօրյակին՝ անցյալում տնտեսապես թույլ և հետամնաց երկրից իր արդյունաբերության զարգացման արագ տեմպերի, գյուղատնտեսության կոլեկտիվացումն իրականացնելու շնորհիվ վերածվել էր հզոր սոցալիստական պետության, որի գոյությունը սարսափ էր պատճառում կապիտալիստներին և ուրախություն՝ աշխարհի բոլոր մասերում ապրող մեր միլիոնավոր բարեկամներին։

Հետպատերազմյան տարիներին սովետական ժողովուրդը արագորեն բուժեց պատերազմի պատճառած ծանր վերքերը, նոր թափով առաջ մղեց սոցիալիստական արդյունաբերությունը, կազմակերպեց գյուղատնտեսության նոր վերելքը, է՛լ ավելի զարգացրեց գիտությունը և կուլտուրան։

Օրավուր նորանոր հաղթանակներ են տանում մարքսիզմ-լենինիզմի վեհ գաղափարները։ Դրա փայլուն ապացույցներից է այն, որ երկրորդ համաշխարհային պատերազմում գերմանական ֆաշիզմի ու ճապոնական միլիտարիզմի պարտության հետևանքով Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների



Միության կողքին Եվրոպայում և Ասիայում բարձրացան, ամրապնդվեցին, աճում ու զարգանում են նաև ուրիշ սոցիալիստական պետություններ՝ Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան, Ալբանիան, Բուլղարիան, Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկան, Լեհաստանը, Կորեական Ժողովրդա-Դեմոկրատական Ռեսպուբլիկան, Հունգարիան, Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկան, Չեխոսլովակիան, Ռումինիան, Վիետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկան, Հարավսլավիան։ Այժմ սոցիալիզմը դուրս է եկել մեկ երկրի շրջանակներից, աճել ու դարձել է համաշխարհային անպարտելի սիստեմ և հաջողությամբ մրցում է կապիտալիստական սիստեմի հետ։

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի անմահ գաղափարների ազդեցության տակ Ասիայի և Աֆրիկայի երկրներում ապրող հարյուր միլիոնավոր մարդիկ թոթափեցին գաղութակալության շղթաները։ Հետզհետե ավելի ու ավելի լայն ծավալ է ստանում գաղութային և կիսագաղութային երկրների ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարը։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի կազմակերպիչն ու ոգեշնչողը Մարտերում կոփված Սովետական Միության

Կոմունիստական պարտիան էր՝ Վ. Ի. Լենինի գլխավորությամբ։

Խաղաղ շինարարության տարիներին, սովետական ստեղծագործ ժողովուրդը՝ պարտիայի առաջնորդությամբ հին աշխարհի փլատակների վրա կառուցեց նոր աշխարհ և հաստատ ու աներեր ընթանում է առաջ, դեպի կոմունիզմի հաղթանակը։

ՍՄԿՊ-ն ուժեղ և անպարտելի է նրանով, որ նա անսահմանորեն հավատարիմ է մարքսիզմ-լենինիզմի ուսմունքին։ Առաջնորդվելով այդ ուսմունքով, նա անձնվիրաբար ծառայում է բանվոր դասակարգի մեծ գործին, ամեն քայլափոխում պաշտպանում է ժողովրդի շահերը, արտահայտում նրա նվիրական իղձերն ու ցանկությունները։ Պարտիան, կառուցելով իր գործունեությունը մարքսիզմ-լենինիզմի գրանիտե հիմքերի վրա, միշտ անհաշտ ու անողոք է իր բոլոր թշնամիների դեմ, հզոր ու անպարտելի է իր շարքերի միասնությամբ ու գաղափարական անաղարտությամբ։ Պարտիայի ամրությանը զարնվելով՝ փշրվեցին այնպիսի թշնամական հոսանքներ, ինչպես մենշևիզմը, էսեռականությունը, տրոցկիզմը, աջ թեքումը, բուրժուական նացիոնալիզմը և այլն։ Առանց այդ հոսանքների մերկացման ու ջախջախ-



ման դժվար էր պատկերացնել թե՛ բանվոր դասակարգի և գյուղացիության տարած հաղթանակը Հոկտեմբերին, թե՛ սոցիալիստական հասարակարգի կառուցումը։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի քաղաքականության փայլուն հաղթանակներից մեկը մեր երկրի բազմազգ ժողովուրդների միջև եղբայրական անխախտ բարեկամության ստեղծումն է ու նրանց փոխադարձ կապերի ամրապնդումը։

Հոկտեմբերյան ռևոլյուցիան մեկընդմիշտ վերջ տվեց ցարական Ռուսաստանի տերիտորիայի վրա ապրող ժողովուրդների ինչպես սոցիալական, այնպես էլ ազգային ճնշմանը, լայն հնարավորություններ ստեղծեց նրանց տնտեսական, քաղաքական և կուլտուրական կյանքի արագ ու անկաշկանդ զարգացման ու ծաղկման, բոլոր աշխատավորների բարեկամության ամրապնդման համար։

Հոկտեմբերյան ռևոլյուցիան ՍՍՌՄ մյուս բոլոր ժողովուրդների հետ միասին վերածնեց և աննախընթաց զարգացման հնարավորություններ տվեց նաև բազմաչարչար հայ ժողովրդին։ Ինչպես ասել է սովետահայ մեծատաղանդ բանաստեղծ Եղիշե Չարենցը, հայ ժողովրդին.

Երկինք մի մաքուր, արև մի բոսոր,
Լոկ հոկտեմբերյան հողմերը տվին:

Սովետական Հայաստանը Մեծ Հոկտեմբերի զավակն է, մարքսիզմ-լենինիզմի աշխարհաշեն գաղափարների մարմնացման ամենափայլուն օրինակներից մեկը։

1. Ցարիզմի տապալման լուրը մեծ խանդավառությամբ ընդունվեց ինչպես ամբողջ Ռուսաստանի, այնպես էլ Անդրկովկասի աշխատավոր մասսաների կողմից, որոնք ոտքի ելան «Կորչի՛ ցարը», «Հա՛ց», «Հո՛ղ», «Խաղաղությո՛ւն» լոզունգներով։

Բուրժուազիայի դեմ բանվորների և գյուղացիների ռևոլյուցիոն պայքարի կազմակերպիչն ու ոգեշնչողը Կոմունիստական պարտիան էր։ Ղեկավարվելով լենինյան հռչակավոր Ապրիլյան թեզիսներով, Անդրկովկասի, այդ թվում Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունները եռանդուն պայքար ծավալեցին բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայից սոցիալիստականին անցնելու պարտիայի քաղաքականության կենսագործման համար։

Պարտիայի VI համագումարը, ելնելով երկրում հուլիսյան ցույցերի գնդակոծումից հետո ամբողջ իշխանությունը բուրժուազիայի ձեռքում կենտրոնացվելու փաստից, Լենինի



ցուցումներին համապատասխան, զինված ապստամբության կուրս վերցրեց։ Ղեկավարվելով համագումարի որոշումներով, Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունները բացատրում էին մասսաներին երկրում ստեղծված իրադրության պատճառները, մերկացնում համաձայնողական պարտիաների և բուրժուա-նացիոնալիստական ուժերի հակաժողովրդական քաղաքականությունը և ռևոլյուցիոն բանվորներին ու գյուղացիներին համախմբում զինված ապստամբության միջոցով իշխանությունը բուրժուազիայից խլելու լենինյան լոզունգի շուրջը։

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի նախապատրաստման շեմքին Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների կյանքում խոշոր նշանակություն ունեցավ Վ. Ի. Լենինի հավատարիմ զինակից Ստեփան Շահումյանի գլխավորությամբ կայացած՝ Կովկասի բոլշևիկյան կազմակերպությունների երկրային առաջին համագումարը, որը լիովին պաշտպանեց պարտիայի VI համագումարի որոշումները։

2. 1917 թվականի Հոկտեմբերին Պետրոգրադի ապստամբ բանվորներն ու զինվորները տապալեցին բուրժուական ժամանակավոր կառավարությունը։ Սովետների Հա-

Ռուսաստանյան երկրորդ համագումարը հռչակեց ամբողջ պետական իշխանության անցումը Սովետների ձեռքը և կազմեց Բանվորա-գյուղացիական կառավարություն՝ Վ. Ի. Լենինի գլխավորությամբ։ Մարդկության համաշխարհային պատմության մեջ առաջինը մեր երկրում հաստատվեց բանվոր դասակարգի դիկտատուրա։

Ռևոլյուցիայի հաղթանակի առաջին օրը, Բանվորների ու զինվորների դեպուտատների Պետրոգրադի Սովետի նիստի ամբիոնից, ի լուր աշխարհի Վ. Ի. Լենինը հայտարարեց. «Ընկերնե՛ր, Բանվորական և գյուղացիական ռևոլյուցիան, որի անհրաժեշտության մասին միշտ խոսում էին բոլշևիկները, կատարվեց։

...Այսուհետև նոր շրջան է սկսվում Ռուսաստանի պատմության մեջ, և տվյալ երրորդ ռուսական ռևոլյուցիան վերջին հաշվով պետք է հասցնի սոցիալիզմի հաղթանակին»։ (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 26, էջ 284)։

Մեծ Հոկտեմբերի հաղթանակը հսկայական ռևոլյուցիոն ալիք առաջացրեց Անդրկովկասում։ Կոմունիստական պարտիայի գլխավորությամբ Հայաստանի, Վրաստանի և Ադրբեջանի բանվորներն ու գյուղացիները Կովկասյան ռազմաճակատի ռևոլյուցիոն



զինվորների հետ միասին պայքարի ելան հանուն Սովետական իշխանության։ 1918 թվականի ապրիլին Բաքվի հերոսական Կոմունայի ստեղծումը հանդիսացավ այդ պայքարի խոշորագույն արդյունքը։ Կոմունան առաջինը բարձրացնելով Հոկտեմբերի դրոշը Անդրկովկասում, մեծ դեր խաղաց երկրամասում ռևոլյուցիոն շարժումները ծավալելու գործում։

3. Անդրկովկասում ստեղծված ռևոլյուցիոն սիտուացիան սարսափեցրեց մենշևիկներին, դաշնակներին, մուսավաթականներին և օտարերկրյա իմպերիալիստներին։ Անտանտայի և ԱՄՆ-ի իմպերիալիստների օգնությամբ Անդրկովկասի բուրժուա-նացիոնալիստական պարտիաները շտապեցին իշխանությունը զավթել և 1917 թվականի նոյեմբերի կեսերին ստեղծեցին Անդրկովկասյան կոմիսարիատը։ Դա մենշևիկների, դաշնակների և մուսավաթականների հակառևոլյուցիոն կոալիցիան էր, որը իմպերիալիստական պետությունների ձեռքում գործիք էր Անդրկովկասը Սովետական Ռուսաստանից անջատելու, հակասովետական ռազմական պլացդարմի վերածելու համար։ Անդրկովկասի դևոլյուցիոն բանվորները և գյուղացիները չճանաչեցին այդ հակառևոլյուցիոն իշ-

իշխանությունը և բոլշևիկների գլխավորությամբ պայքարի ելան նրա դեմ։ Սակայն Անգլիայի և ԱՄՆ-ի իմպերիալիստների անմիջական օգնությամբ բուրժուական նացիոնալիստներին հաջողվեց իշխանությունը ժամանակավորապես պահել իրենց ձեռքում։

4. Անդրկովկասյան կոմիսարիատի վարած հակառևոլյուցիոն քաղաքականությունը գերմանա-թուրքական զավթիչներին հնարավորություն տվեց բացահայտ զինված ինտերվենցիա կազմակերպել Անդրկովկասում։

Անդրկովկասի կոմիսարիատին հաջորդեց սեյմը, որն իր հակաժողովրդական գործունեությամբ ոչնչով չէր տարբերվում իր նախորդից։ 1918 թվականի մայիսին սեյմը ցրվեց և ստեղծվեցին Հայաստանի, Վրաստանի, Ադրբեջանի մարիոնետային բուրժուա-նացիոնալիստական կառավարությունները։ Հայաստանում իշխանությունը զավթեցին դաշնակները, որոնց անփառունակ տիրապետության օրով հայ ժողովուրդն ապրեց իր բազմադարյան պատմության ամենամռայլ օրերը։ Հայաստանը վերածվեց սովի, աղքատության, վայրենի կամայականությունների երկրի։

Առաջին համաշխարհային պատերազմում գերմանական բլոկի կրած պարտությունից



հետո Անդրկովկասը, այդ թվում նաև Հայաստանը օկուպացիայի ենթարկվեց Անգլիական զորքերի կողմից։ Անտանտայի և ԱՄՆ-ի իմպերիալիստները ձգտում էին իրենց տիրապետությունը հաստատել Հայաստանի նկատմամբ, այն ոչ միայն Սովետական Ռուսաստանի դեմ օգտագործելու, այլև Մերձավոր ու Միջին Արևելքում իրենց դիրքերն ամրապնդելու համար։

5. Հայաստանի բանվորների և գյուղացիների հերոսական պայքարը նացիոնալիստական հակառևոլյուցիայի ու օտարերկրյա իմպերիալիստների դեմ հանուն Սովետական իշխանության գլխավորելու գործում հսկայական դեր խաղաց Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունների կազմակերպական միավորումը։ 1919 թվականի սեպտեմբերին տեղի ունեցավ ՌԿ(բ)Պ Հայաստանի Կոմունիստական կազմակերպությունների ներկայացուցիչների խորհրդակցությունը, իսկ 1920 թվականի հունվարին՝ առաջին անլեգալ կոնֆերանսը։ Կոնֆերանսը Հայաստանի Կոմունիստական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրը համարեց ռևոլյուցիոն ճանապարհով դաշնակների իշխանության տապալումը։

6. 1920 թվականի մայիսին Հայաստանի

բանվորները և գյուղացիները՝ Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ զինված ապստամբություն բարձրացրին դաշնակների ու նրանց անգլո-ամերիկյան տերերի դեմ, Ալեքսանդրոպոլում, Ղարսում, Նոր-Բայազետում, Սարիղամիշում, Զանգեզուրում և մի շարք այլ վայրերում իշխանությունը ապստամբության օրերին գտնվում էր բանվորների և գյուղացիների ձեռքում։ Սակայն օտարերկրյա իմպերիալիստների և անդրկովկասյան հակառևոլյուցիոն ուժերի օգնությամբ դաշնակներին հաջողվեց ճնշել ապստամբությունը։ Մայիսյան ապստամբությունը խոշոր դեր խաղաց Հայաստանի ռևոլյուցիոն շարժման պատմության մեջ, հանդիսացավ նրա հերոսական էջերից մեկը, մասսաների ռևոլյուցիոն դաստիարակության դպրոցը։

Մայիսյան ապստամբության ճնշումից հետո դաշնակները երկրում է՛լ ավելի ուժեղացրին տեռորը. հարյուրավոր կոմունիստներ և ապստամբության աչքի ընկնող մասնակիցներ նետվեցին բանտերը։ Աշխատավոր ժողովրդի բազմաթիվ անձնվեր զավակներ իրենց սքանչելի կյանքը նվիրաբերեցին ռևոլյուցիայի գործին, Հայաստանում սովետական կարգերի հաստատման գործին։



7. Հայաստանում պնալով հասունանում էր ռևոլյուցիոն իրադրությունը։ Դաշնակ բախտախնդիրները ձեռնարկում էին բոլոր միջոցները բանվորների և գյուղացիների ռևոլյուցիոն ելույթները ճնշելու համար։ Անտանտայի իմպերիալիստների դրդմամբ 1920 թվականի աշնանը բռնկվեց հայ-թուրքական նոր պատերազմ։ Թուրքական զավթիչների նոր ներխուժումը Հայաստան հայ ժողովրդին բերեց նորանոր զրկանքներ ու տառապանքներ։ Անտանտայի և ԱՄՆ-ի իմպերիալիստները նպատակ ունեին հայ-թուրքական պատերազմը օգտագործել Թուրքիային Սովետական Ռուսաստանի դեմ հանելու և հակասովետական նոր ինտերվենցիա կազմակերպելու համար։

Հայ ժողովուրդը կանգնած էր ֆիզիկական բնաջնջման վտանգի առաջ։ Նրա փրկության, ազգային վերածննդի միակ ելքը Հայաստանում Սովետական կարգերի հաստատումն էր։

8. 1920 թվականի նոյեմբերի 29-ին Հայաստանի ապստամբ բանվորներն ու գյուղացիները՝ Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, ռուս մեծ ժողովրդի և XI Կարմիր Բանակի օգնությամբ տապալեցին դաշնակների բռնապետությունը և երկրում

հաստատեցին Սովետական իշխանություն։ Մեծ Հոկտեմբերի արշալույսը բացվեց նաև հայոց լեռնաշխարհի վրա։ Հայ ժողովուրդը մեկընդմիշտ ազատագրվեց սոցիալական և ազգային ճնշումից, սկսեց կերտել իր նոր երջանիկ սոցիալիստական կյանքը։ Իմպերիալիզմի ճնշումից ազատագրված աշխատավորական Սովետական Հայաստանին ջերմորեն ողջունեց պրոլետարիատի հանճարեղ առաջնորդ և ուսուցիչ Վ. Ի. Լենինը։

«Թո՛ղ իմանան բոլորը, ում հարկ է գիտենալ,— գրել է Ի. Վ. Ստալինը այդ օրերին,—որ այսպես կոչված հայկական «պրոբլեմը», որի վրա ապարդյուն գլուխ էին ջարդում իմպերիալիստական դիվանագիտության հին գայլերը, կարողացավ լուծել միայն Սովետական իշխանությունը»։

9. Սովետական կառավարությունը Վ. Ի. Լենինի նախաձեռնությամբ հսկայական օգնություն կազմակերպեց ազատագրված հայ ժողովրդին՝ սոցիալիստական նոր կյանք կառուցելու համար։ 1920 թվականի վերջերին ՌՍՖՍՌ-ի կառավարությունը Վ. Ի. Լենինի նախագահությամբ որոշում ընդունեց Հայաստանին տալ 3 միլիարդ ռուբլի (600.000 ռուբլի՝ ոսկով)։ 1920—1921 թ. թ. Սովետական Ռուսաստանը Հայաստան ուղարկեց մեծ



քանակությամբ արդյունաբերական ապրանքներ և պարենամթերք։ Հայաստանի աշխատավորությանը զգալի օգնություն ցույց տվեցին նաև Սովետական Ադրբեջանը, Իվանովո-Վոզնեսենսկի բանվորները և երկրի այլ մարզերի աշխատավորները։

10. Հայ ժողովրդի ոխերիմ թշնամիներ դաշնակներն ստանալով իմպերիալիստական պետությունների և վրացական մենշևիկների օգնությունը, 1921 թվականի փետրվարին դիմեցին հակառևոլյուցիոն ավանտյուրայի։ Կոմունիստական պարտիայի կոչով Հայաստանի բանվորները և գյուղացիները, Կարմիր Բանակի զորամասերի օգնությամբ, կարճ ժամանակամիջոցում ջախջախեցին այդ ավանտյուրան։ Ձախողվեցին իմպերիալիստական պետությունների կողմից Հայաստանը գաղութացնելու նոր փորձերը։

11. Հայաստանը՝ ցարական Ռուսաստանի այդ երբեմնի հետամնաց ծայրամասը, դաշնակների ողորմածությամբ քաղցի, հրի ու սրի մատնված երկիրը Սովետական իշխանության տարիներին՝ Կոմունիստական պարտիայի լենինյան ազգային քաղաքականության հետևողական ու անշեղ կենսագործման, ռուս մեծ ժողովրդի և ՍՍՌՄ մյուս ժողովուրդների եղբայրական ու անշահախնդիր

օգնության շնորհիվ, պատմական կարճ ժամանակամիջոցում, վիթխարի թռիչք կատարեց հետամնացությունից դեպի պրոգրես, դարձավ բարձր զարգացած սոցիալիստական ինդուստրիայի, կոլտնտեսային առաջավոր գյուղատնտեսության, ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական ծաղկող կուլտուրայի երկիր։

Սոցիալիզմի շինարարության հաջող ծավալման գործում հայ ժողովրդի համար անգնահատելի նշանակություն ունեցավ Վ. Ի. Լենինի Կովկասի կոմունիստներին 1921 թվականի ապրիլին ուղղած նշանավոր նամակը, որի մեջ հանճարեղ պարզությամբ շարադրված էր Կովկասի բոլշևիկների և ամբողջ աշխատավորության աշխատանքի ու պայքարի մարտական ծրագիրը։ Մեծ առաջնորդը պահանջում էր անմիջապես ձեռնամուխ լինել էլեկտրիֆիկացման ու ոռոգման գործին, որը «ամենից ավելի է պետք և ամենից ավելի կվերաստեղծի երկիրը, կվերածնի նրան, կթաղի անցյալը, կամրապնդի անցումը դեպի սոցիալիզմ» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 32, էջ՝ 404)։ Կովկասի մյուս ժողովուրդների հետ միասին հայ ժողովուրդը պատվով կատարեց մեծ առաջնորդի պատգամները։



Անդրկովկասի ժողովուրդների տնտեսական, կուլտուրական և քաղաքական ջանքերի միավորման գործում կարևոր նշանակություն ունեցավ Անդրֆեդերացիայի ստեղծումը (1922—1936 թ. թ.), որը Կոմունիստական պարտիայի լենինյան ազգային քաղաքականության վառ արտահայտությունն էր։

Սովետական ժողովուրդների եղբայրական բարեկամության ցեմենտող ուժը Կոմունիստական պարտիան է, որը անշեղորեն ղեկավարվում է պրոլետարական ինտերնացիոնալիզմի և ազգերի համերաշխության լենինյան գաղափարներով։ «Մենք ազգերի կամավոր միություն ենք ուզում,— ասում էր Վ. Ի. Լենինը,— այնպիսի միություն, որը ո՛չ մի բռնություն չթույլատրեր մի ազգի կողմից մյուսի վրա, այնպիսի միություն, որը հիմնըված լիներ ամենալրիվ վստահության վրա, եղբայրական միասնության պարզ գիտակցության վրա, լիովին կամավոր համաձայնության վրա» (Վ. Ի. Լենին. Երկեր, հ. 30, էջ՝ 368)։ ՍՍՌՄ ժողովուրդների 40-ամյա փորձը պերճախոս կերպով հաստատում է Կոմունիստական պարտիայի լենինյան ազգային քաղաքականության կենսունակությունը,

ցույց է տալիս ազգային հարցի լուծման միակ ճիշտ ուղին։

12. Սոցիալիստական ինդուստրացումը լիովին փոխեց Սովետական Հայաստանի դեմքը։ Ռեսպուբլիկայի ամբողջ ժողովրդական տնտեսությունը նախապատերազմյան հնգամյակների տարիներին տեխնիկական արմատական վերակառուցման ենթարկվեց և բարձր մակարդակի հասավ։ 1940 թվականին ռեսպուբլիկայի արդյունաբերական արտադրանքը 1913 թվականի համեմատությամբ ավելացավ 21 անգամ։ Ժողովրդական տնտեսության մեջ արդյունաբերական արտադրանքի տեսակարար կշիռը հասավ 80%-ի։

Այդ տարիներին արմատապես վերակառուցվեց պղնձի արդյունաբերությունը Ջանգեզուրում և Ալավերդիում, հայտնաբերվեցին գունավոր մետաղների նոր վիթխարի պաշարներ, կառուցվեցին արդյունաբերական նոր, խոշոր ձեռնարկություններ։ Երևանում, Լենինականում, Կիրովականում, Ալավերդիում, Ղափանում և այլ վայրերում վեր խոյացան ժամանակակից տեխնիկայով հագեցված գործարանների, ֆաբրիկաների և հիդրոկայանների հսկա կորպուսները։

Ծանր ինդուստրիայի բազայի վրա լայն



թափով զարգացավ նաև թեթև ու սննդի արդյունաբերությունը։

13. Սովետական իշխանության տարիներին ռեսպուբլիկայում հաջողությամբ լուծվեց կոոպերացիայի լենինյան պլանի հիման վրա անհատական գյուղացիական տնտեսությունների սոցիալիստական վերակառուցման դժվարագույն խնդիրը։ Երկրորդ հնգամյակում հիմնականում ավարտվեց գյուղատնտեսության կոլեկտիվացումը։ 1937 թվականին գյուղացիական տնտեսությունների մոտ 90 տոկոսը մտել էր կոլտնտեսությունների մեջ, որոնց ձեռքին էր գտնվում բոլոր ցանքատարածությունների 95,6 տոկոսը։

Նախապատերազմյան հնգամյակների տարիներին առանձնահատուկ ուշադրություն դարձվեց ոռոգման սիստեմի ընդլայնման ու վերակառուցման վրա, բոլոր շրջաններում ստեղծվեցին ՄՏ կայաններ, կազմակերպվեցին բազմաթիվ սովխոզներ։ Գյուղատնտեսության մեջ ավելացավ հանրային հոտի գլխաքանակը, բարելավվեց նրա ցեղայնությունը, բարձրացավ անասունների մթերատվությունը։

Այս ամենի շնորհիվ Հայաստանի գյուղատնտեսության համախառն արտադրանքը

1940 թվականին՝ 1913 թվականի համեմա-
տությամբ՝ աճեց 56 տոկոսով, իսկ ապրան-
քայնությունը բարձրացավ մինչև 50 տոկոսի։
Երկրի ինդուստրացման և գյուղատնտեսու-
թյան կոլեկտիվացման բնագավառում պար-
տիայի քաղաքականության հաղթանակն է՛լ
ավելի ամրապնդեց բանվոր դասակարգի և
գյուղացիության դաշինքը, բարձրացրեց
բանվորների և գյուղացիների սոցիալիստա-
կան գիտակցականությունը, նրանց դարձրեց
կոմունիստական հասարակարգի ակտիվ կա-
ռուցողներ։

14. Սովետական իշխանության տարինե-
րին ռեսպուբլիկայում իրագործվեց կուլտու-
րական ռևոլյուցիա, բոլոր պայմաններն ըս-
տեղծվեցին աշխատավորությանը՝ բանվոր-
ներին և գյուղացիներին կրթված ու կուլտու-
րական դարձնելու համար։ Առաջին և երկ-
րորդ հնգամյակների տարիներին ռեսպուբ-
լիկայում մտցվեց ընդհանուր պարտադիր
տարրական, իսկ այնուհետև յոթնամյա կըր-
թություն, զարկ տրվեց միջնակարգ և բարձ-
րագույն դպրոցների ցանցի ընդարձակմանը։
Ժողովրդական տնտեսության տարբեր բնա-
գավառների համար ռեսպուբլիկայի ԲՈՒՀ-
երը մինչև 1940 թվականը պատրաստեցին
7.268 մասնագետ, տեխնիկումները և այլ



միջնակարգ մասնագիտական ուսումնական
հաստատությունները՝ 13.300 մասնագետ։
Նախապատերազմյան տարիներին ռեսպուբ-
լիկայում մեծ աշխատանք կատարվեց կուլ-
տուր-լուսավորական հիմնարկների ստեղծ-
ման ուղղությամբ։

Սոցիալիզմի հաղթանակն ապահովեց աշ-
խատավորների նյութական բարեկեցության
բարձրացումը, հասարակության բոլոր ան-
դամների նյութական ու հոգևոր ուժերի բազ-
մակողմանի զարգացումը։

15. Սովետական ժողովրդի խաղաղ ստեղ-
ծագործ աշխատանքն ընդհատվեց 1941 թվա-
կանի հունիսի 22-ին մեր Հայրենիքի վրա
հիտլերյան Գերմանիայի ուխտադրուժ հար-
ձակումով։ Կոմունիստական պարտիայի կո-
չով մեր ժողովուրդը մեկ մարդու նման ոտքի
ելավ պաշտպանելու Մեծ Հոկտեմբերի նվա-
ճումները։ Մեր Հայրենիքը վերածվեց միաս-
նական մարտական ճամբարի։ Պատերազմի
տարիներին է՛լ ավելի աճեց ու ամրապնդվեց
Սովետական Միության ժողովուրդների բա-
րեկամությունն ու եղբայրական համագոր-
ծակցությունը։

Պատերազմի առաջին իսկ օրից մինչև նրա
հաղթական ավարտը հայ ժողովուրդը,
ՍՍՌՄ բազմազգ ժողովուրդների հետ միա-

սին ուս-ուսի տված, անձնվիրաբար պայքարեց մեր Հայրենիքի ազատությունն ու անկախությունը պաշտպանելու համար։ Հայ ժողովուրդը ռազմաճակատի իր զավակներին ուղղած նշանավոր նամակում կոչ արեց՝ «Արևմուտք շարժվելով միայն դուք կարագացնեք Ձեր հաղթական վերադարձը դեպի Հայրենի տուն՝ մայր Հայաստան։ Տուն չվերադառնալ՝ մինչև Բեռլինի վրա չծածանվի հաղթանակի դրոշը»։

Հայաստանի զավակները անօրինակ սխրագործություններ կատարեցին ռազմաճակատներում։ Նրանք իրենց ավանդը մտցրին հերոս քաղաքներ Մոսկվայի, Լենինգրադի, Սևաստոպոլի, Օդեսայի, Ստալինգրադի պաշտպանության գործում, մարտնչեցին ռազմաճակատի բոլոր հատվածներում, ակտիվորեն մասնակցեցին Բեռլինի վրա Հաղթանակի դրոշի բարձրացմանը։ Գերմանաֆաշիստական զավթիչների դեմ մղված մարտերում ցուցաբերած խիզախության և արիության համար հայ ժողովրդի քաջարի զավակներից 106 մարդու շնորհվեց Սովետական Միության Հերոսի կոչում, 50 հայ սպաների՝ գեներալի կոչում, մոտ 67 հազար հայ ռազմիկներ պարգևատրվեցին ՍՍՌՄ շքանշաններով ու մեդալներով։



16. Հայրենական Մեծ պատերազմի տարիներին անօրինակ սխրագործություններ կատարեցին Հայաստանի բանվորները, կոլտնտեսային գյուղացիությունը և ինտելիգենցիան։ «Ամե՛ն ինչ ռազմաճակատի համար, ամե՛ն ինչ հաղթանակի համար» նշանաբանով թիկունքի աշխատավորները ժամանակին կատարում էին ռազմաճակատի պահանջները, օր-օրի վրա բարձրացնում աշխատանքի արտադրողականությունը։ Հաղթահարելով բոլոր տեսակի զրկանքներն ու դժվարությունները, աշխատանքային քաջագործություններ կատարեցին Սովետական Հայաստանի կանայք, պատանիներն ու աղջիկները։

Սովետական Հայաստանի աշխատավորների հայրենասիրական շարժումը՝ թիկունքում և Կարմիր Բանակի մարտիկների քաջագործությունները ռազմաճակատում, անկեղծ ոգևորություն առաջացրին արտասահմանյան երկրների հայ աշխատավորության մեջ։ Ֆաշիզմի դեմ մարտնչող Կարմիր Բանակի ռազմիկների սխրագործություններով ոգեշնչված՝ Սփյուռքի հայ աշխատավորությունը ամեն կերպ օգնում և աջակցում էր որպեսզի օր առաջ ջախջախվի ֆաշիզմը, ժողովուրդների վրա ծածանվի խաղաղության դրոշը։ Սփյուռքի հայ աշխատավորությունը

յավ էր գիտակցում, որ Սովետական Միությունը միակ ուժն է, որը կարող է ոչնչացնել գերմանա-ֆաշիստական զավթիչներին, փրկել համաշխարհային քաղաքակրթությունը ֆաշիստական բնաջնջումից, պաշտպանել ՍՍՌՄ բոլոր եղբայրական ժողովուրդների, այդ թվում և հայ ժողովրդի պետականությունը, անկախությունն ու ազատությունը։

17. Սովետական ժողովուրդը երկրորդ համաշխարհային պատերազմում ջախջախելով գերմանական ֆաշիզմն ու ճապոնական միլիտարիզմը, պաշտպանեց մեր Հայրենիքի պատիվը, ազատությունն ու անկախությունը, հնարավորություն ստացավ վերսկսելու կոմունիստական շինարարությունը։

Սովետական ամբողջ ժողովրդի հետ միասին Հայաստանի աշխատավորները նոր հաջողությունների հասան հետպատերազմյան տարիներին։ Բուռն թափով զարգացավ ռեսպուբլիկայի արդյունաբերությունը, գյուղատնտեսությունը և կուլտուրան։

Հայկական ՍՍՌ-ն այժմ ունի զարգացած էներգետիկ, քիմիական, լեռնային, մեքենաշինական, շինանյութերի, տեքստիլ-տրիկոտաժի, սննդի արդյունաբերություն և արտադրության այլ ճյուղեր։ Ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկությունները երկրին



տալիս են պղինձ, ալյումին, մետաղահատ հաստոցներ, գեներատորներ, տրանսֆորմատորներ, շարժական էլեկտրակայաններ, հիդրոտուրբիններ, էլեկտրաճշգրիտ գործիքներ, կարբիդ, ցեմենտ, հրակայուն աղյուս և այլն։

Միայն հինգերորդ հնգամյակի ընթացքում կառուցվել ու շահագործման է հանձնվել 40-ից ավելի արտադրական խոշոր ձեռնարկություն։ Ռեսպուբլիկայի արդյունաբերական արտադրանքի մի շարք տեսակներ ուղարկվում են ՍՍՌՄ-ի շատ ռեսպուբլիկաներ ու մարզեր, ինչպես նաև ժողովրդական դեմոկրատիայի ու այլ երկրներ։ Ռեսպուբլիկայի արդյունաբերական արտադրանքի ծավալը 1913 թվականի համեմատությամբ աճել է 45 անգամ, ընդ որում խոշոր արդյունաբերության մեջ՝ 136 անգամ։

Սովետական Հայաստանի արդյունաբերությունն այժմ մեկ օրում այնքան արտադրանք է տալիս, որքան տվել է նախառևոլյուցիոն Հայաստանը ամբողջ 1919 թվականին։ Արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը 1956 թվականին՝ 1950 թվականի համեմատությամբ՝ կրկնապատկվել է, իսկ 1940 թվականի համեմատությամբ աճել է մոտ 5,2 անգամ։

Բուռն թափով զարգանում է մեքենաշինու-

թյունը, որի արտադրանքի թողարկումը 1913 թվականի համեմատությամբ ավելացել է 328 անգամ, 1940 թվականի համեմատությամբ՝ 21 անգամ, իսկ 1950 թվականի համեմատությամբ՝ 3 անգամ։

Մեր ռեսպուբլիկան դարձել է բարձր զարգացած գունավոր մետալուրգիայի երկիր։ Գունավոր մետալուրգիայի ձեռնարկությունների թողարկած արտադրանքի ծավալը 1955 թվականին՝ 1950 թվականի համեմատությամբ՝ ավելացել է 3,4 անգամ։ Նախասովետական Հայաստանը քիմիական արդյունաբերություն չուներ, այժմ ռեսպուբլիկայում գործում են քիմիական արդյունաբերության՝ նորագույն տեխնիկայով հագեցված խոշոր ձեռնարկություններ, որոնց արտադրանքը 1950 թվականի համեմատությամբ հինգերորդ հնգամյակի վերջում ավելացավ 2,7 անգամ։

Հայաստանի աշխատավորները առանձնապես մեծ հաջողությունների են հասել երկրի էլեկտրիֆիկացման վերաբերյալ Վ. Ի. Լենինի պատգամների կենսագործման ասպարեզում։ 1913 թվականին Հայաստանում կար ընդամենը 10 մանր էլեկտրակայան՝ 3.100 կիլովատ ընդհանուր կարողությամբ, տարեկան 5,1 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիայի արտադրությամբ։ 1913 թվականի համե-



մատությամբ 1956 թվականին էլեկտրաէներգիայի արտադրությունն ավելացել է 450 անգամ։ Այդ նշանակում է, որ այժմ ռեսպուբլիկայի էլեկտրակայանները մեկ օրում ավելի շատ էլեկտրաէներգիա են արտադրում, քան արտադրվել է ամբողջ 1913 թվականի ընթացքում։ Բնակչության մեկ շնչին ընկնող էլեկտրաէներգիայի արտադրությամբ Հայաստանն առաջ է անցել կապիտալիստական այնպիսի երկրներից, ինչպես Ֆրանսիան և Հոլանդիան։ Մեզ մոտ բնակչության մեկ շնչին երկու անգամ ավելի էլեկտրաէներգիա է ընկնում քան Իտալիայում և Ճապոնիայում։ Ներկայումս Հայաստանը երկու անգամ ավելի էլեկտրաէներգիա է արտադրում, քան Թուրքիան։

Ծանր արդյունաբերության զարգացման ասպարեզում ձեռք բերած հաջողությունների հիման վրա անշեղորեն աճում է ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը։ 1956 թվականին տեքստիլ արդյունաբերության արտադրանքը՝ 1913 թվականի համեմատությամբ՝ ավելացել է 66 անգամ, սննդարդյունաբերությանը՝ 18 անգամ։ Ներկայումս ռեսպուբլիկան արտադրում է ժողովրդական սպառման ավելի քան 400 տեսակի ապրանքներ։

Վեցերորդ հնգամյակում նոր, ավելի լայն հեռանկարներ են բացվում ռեսպուբլիկայի արդյունաբերության զարգացման համար։ Արդյունաբերության համախառն արտադրանքն ավելանալու է 1,7 անգամ, էլեկտրաէներգիայի արտադրությունը 1,3 անգամ, գունավոր մետաղներինը՝ ավելի քան 3 անգամ, հանքային պարարտանյութերինը՝ 1,6 անգամ, ցեմենտինը՝ 2 անգամ։ Ծանր արդյունաբերության բոլոր ճյուղերի զարգացման հետ միասին վեցերորդ հնգամյակում զգալիորեն աճելու է ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը։

Սովետական իշխանության տարիներին ռեսպուբլիկայում լայնորեն ծավալվել է բնակարանային շինարարությունը։ Եթե առաջին հնգամյակի տարիներին պետական հիմնարկձեռնարկությունների գծով կառուցվել էր 186 հազար քառ. մետր բնակելի տարածություն, ապա հինգերորդ հնգամյակում այն հասավ 611 հազար քառ. մետրի։ Հինգերորդ հնգամյակում կառուցվել են 475 հազար քառ. մետր տարածությամբ անհատական բնակարաններ 1956—60 թ. թ. կառուցվելու են 2,1 միլիոն քառ. մետր ընդհանուր տարածությամբ բնակելի շենքեր։

18. ՍՄԿՊ XX համագումարի պատմական



որոշումների հաջող կենսագործման, կոմունիզմի ուղիով սովետական ժողովրդի հետևողական առաջընթացի համար բացառիկ նշանակություն ունի արդյունաբերության և շինարարության կառավարման վերակառուցումը։

Այդ ուղղությամբ պարտիայի և կառավարության կիրառած միջոցառումները լայն հնարավորություն են տալիս բարձրացնելու մասսաների ակտիվությունը, բացահայտելու և լրիվ կերպով օգտագործելու սոցիալիստական տնտեսության ընդերքում թաքնված ռեզերվները, դրանք ի սպաս դնելու կոմունիզմի կառուցման գործին։

Պարտիայի և կառավարության որոշումների համաձայն Հայկական ՍՍՌ-ն դարձել է ինքնուրույն տնտեսական շրջան, ստեղծված է Հայկական ՍՍՌ Ժողովրդական Տնտեսության Խորհուրդ։ Ժողտնտխորհի առաջին քայլերը ցույց են տալիս պարտիայի և կառավարության նոր միջոցառման ուժն ու կենսունակությունը արդյունաբերության հետագա ավելի հզոր վերելքի կազմակերպման գործում։

19. Հայաստանի գյուղատնտեսության աշխատողները, կենսագործելով ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումի և պարտիա-

յի ու կառավարության մյուս որոշումները, վերջին տարիներին զգալի հաջողությունների են հասել գյուղատնտեսության մթերքների՝ կաթի, յուղի, մսի, բրդի արտադրությունն ավելացնելու գործում։

1955 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, կոլտնտեսությունների դրամական եկամուտներն աճել են 3 անգամ, անբաժանելի ֆոնդերը՝ 4 անգամ, արտադրության հիմնական միջոցները՝ 3,8 անգամ։ Հինգերորդ հնգամյակում բամբակի համախառն բերքն ավելացավ 47 տոկոսով, շաքարի ճակնդեղինը՝ 50 տոկոսով, ծխախոտինը՝ 54 տոկոսով, բանջարեղենինը՝ 78 տոկոսով, խաղողինը՝ 29 տոկոսով։ Զգալի հաջողություններ են ձեռք բերվել անասնաբուծության զարգացման ասպարեզում։ Անասունների ընդհանուր գլխաքանակն ավելացել է 21 տոկոսով, այդ թվում կովերինը՝ 36 տոկոսով, խոզերինը՝ 62 տոկոսով, ոչխարներինը՝ 47 տոկոսով։ 1950 թվականին արտադրվել է միս (կենդանի քաշով) 16,2 հազար տոննա, կաթ՝ 133,4 հազար տոննա, բուրդ՝ 1.745 տոննա, ձու՝ 42,6 միլիոն հատ, իսկ 1956 թվականին արտադրվել է միս՝ 28,4 հազար տոննա, կաթ՝ 243,8 հազար



տոննա, բուրդ՝ 2.888 տոննա, ձու՝ 96,2 միլիոն հատ։

Ջերմորեն արձագանքելով մոտակա տարիներին բնակչության մեկ շնչին ընկնող մսի, կաթի, յուղի արտադրությամբ ԱՄՆ-ին հասնելու՝ պարտիայի կոչին և հաշվի առնելով իրենց հնարավորությունները, ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները պարտավորվել են 1957 թվականին յուրաքանչյուր հարյուր հեկտար հողատարածության դիմաց ստանալ 55 ցենտներ միս և 222 ցենտներ կաթ, իսկ 1960 թվականին՝ 82 ցենտներ միս, 352 ցենտներ կաթ։ Մի շարք շրջաններ և բազմաթիվ կոլտնտեսություններ վերցրել են ավելի բարձր պարտավորություններ։

Ռեսպուբլիկայի աշխատավորներն զգալի աշխատանք են կատարել ոռոգման ցանցն ընդարձակելու համար, կառուցվել են տասնյակ ջրանցքներ, որոնք ոռոգում են հարյուր հազարավոր հեկտար հող։ Արզնի—Շամիրամի, Թալինի, Կոտայքի ջրանցքների շինարարության ավարտումը հնարավորություն կտա մոտակա տարիներին ոռոգել մինչև այժմ չօգտագործված հողերի հսկայական մասիվներ, որոնց բազայի վրա կազմակերպվելու են խաղողագործական և

կտղաբուծական սովխոզներ, ընդարձակվելու են եղածները։

20. Ծաղկում է Սովետական Հայաստանի՝ ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան։ Եթե 1914 թվականին Հայաստանում գործում էր 459 դպրոց, որտեղ սովորում էին 34.700 աշակերտ և աշխատում 1.100 ուսուցիչ, ապա ռեսպուբլիկայի 1.197 հանրակրթական դպրոցներում 1956—57 ուս. տարում սովորում էին մոտ 274.600 աշակերտ և աշխատում ավելի քան 18.600 ուսուցիչ։ Նախասովետական Հայաստանում չկար ոչ մի բարձրագույն ուսումնական հաստատություն, այժմ Հայկական ՍՍՌ-ն ունի 12 բուհ, որտեղ սովորում է 20 հազարից ավելի ուսանող։

Հայաստանում բնակչության յուրաքանչյուր հազար մարդուն ընկնում է 45 անգամ ավելի սովորող, քան Իրանում, 11 անգամ ավելի, քան Թուրքիայում, 4 անգամ ավելի, քան Ֆրանսիայում։ Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության մեջ 1957 թվականի սկզբում աշխատում էին 6.000 ինժեներ, 3.500 ագրոնոմ, զոոտեխնիկ և անասնաբույժ, 3.500 բժիշկ, 18.000 մանկավարժ, միջնակարգ մասնագիտական կրթություն ունեցող 25.900 մասնագետ։



Ռեսպուբլիկայի Գիտությունների ակադեմիան, որն ստեղծվեց Հայրենական Մեծ պատերազմի ծանր տարիներին (1943 թ.) իր գիտահետազոտական հիմնարկներով հսկայական ավանդ է մուծում սովետական գիտության զարգացման գործում, պայքարում է ՍՄԿՊ XX համագումարի կողմից մեր գիտության առջև դրված կարևոր նշանակություն ունեցող բազմաթիվ պրոբլեմների լուծման համար։ Սովետահայ մի շարք գիտնականներ իրենց հետազոտություններով ընդհանուր ճանաչում են գտել մեր երկրում և նրա սահմաններից դուրս։

Մեծ են հայ ժողովրդի նվաճումները գրականության և արվեստի զարգացման գործում։ Սովետահայ գրողները և արվեստագետները բազմաթիվ արժեքավոր ստեղծագործություններ են տվել, որոնց մեջ արտացոլվում են մեր կյանքում կատարված մեծագույն վերափոխումները, սոցիալիզմի երկրի մարդկանց ստեղծագործական աշխատանքը և հերոսական առօրյան։

Սովետական իշխանության տարիներին ռեսպուբլիկան ծածկվել է կուլտուր-լուսավորական հիմնարկների խիտ ցանցով. 1956 թվականին ռեսպուբլիկայում գործում էր 1.662 մասսայական գրադարան՝ 1913 թվա-

կանին եղած 13-ի փոխարեն, 1.175 ակումբ, 20 թանգարան, 10 թատրոն, 378 կինոսարքավորում, 52 կուլտուրայի տուն և այլն: Գնալով աճում է հրատարակվող գրքերի, թերթերի, ամսագրերի քանակը: Այժմ ռեսպուբլիկայում լույս է տեսնում 76 թերթ, 13 ամսագիր: Հայ աշխատավորները մայրենի լեզվով կարդում են Մարքսի, Էնգելսի, Լենինի երկերը, համաշխարհային և ռուսական գրականության ականավոր ներկայացուցիչների ստեղծագործությունները:

Խոշոր աշխատանք է կատարված ժողովրդական առողջապահության և բնակչության բուժսպասարկումը բարելավելու բնագավառում: Եթե 1913 թվականին Հայաստանում կար ընդամենը 18 բուժհիմնարկություն, որտեղ աշխատում էր 73 բժիշկ, ապա 1955 թվականին գործում էր 235-ից ավելի բուժհիմնարկ, որտեղ աշխատում էր 3.357 բժիշկ: Աշխատավորների հանգստին և առողջապահությանն են ծառայում ռեսպուբլիկայի 19 սանատորիաները և 8 հանգստյան տները, բազմաթիվ պիոներական ճամբարներն ու առողջապահական հրապարակները:

21. Հայ ժողովրդի նկատմամբ Կոմունիստական պարտիայի հոգատարության վառ



արտահայտություններից մեկն էլ աշխարհի տարբեր մասերում ցրված հայ աշխատավորության հայրենադարձության կազմակերպումն էր: Ինչպես հայտնի է, դեռևս նախապատերազմյան տարիներին Հայաստան էին ներգաղթել 31 հազար հայ աշխատավորներ Արտասահմանյան հայերի հայրենասիրական ձգտումներն է՛լ ավելի ուժեղացան Սովետական Հայաստանում կատարված վիթխարի սոցիալ-տնտեսական փոփոխությունների, էկոնոմիկայի և կուլտուրայի ասպարեզում ձեռք բերված հաջողությունների, Հայրենական պատերազմում ՍՍՌՄ համաշխարհային-պատմական հաղթանակների շնորհիվ:

Ընդառաջելով տարագիր հայ աշխատավորության խնդրանքին և Սովետական Հայաստանի կազմակերպությունների միջնորդությանը, ՍՍՌՄ կառավարությունը 1946 թվականի վերջերին որոշում ընդունեց արտասահմանյան հայերի հայրենադարձության մասին: Այս անգամ էլ դաշնակների արյունոտ ձեռքը, շանտաժը պրովոկացիաները չկարողացան արգելակել հայ աշխատավորության հայրենիք վերադառնալու անհաղթահարելի ձգտումը, և 1946—1948 թվականների ընթացքում մոտ 100 հազար

հայեր հնարավորություն ստացան ներգաղթելու Սովետական Հայաստան։ Հայաստանի աշխատավորները ջերմորեն դիմավորեցին հայրենադարձներին։ Պետությունը բազմակողմանի օգնություն կազմակերպեց նրանց, ապահովելով աշխատանքով ու բնակարանով։

Վերածնված Հայաստանում իրենց եղբայրների և քույրերի հետ միասին, համախմբված աշխատանքային միասնական կոլեկտիվում, արտասահմանից եկած հայերը դարձան մեր հասարակության լիիրավ անդամներ, նոր կյանքի իսկական, գիտակից կերտողներ, որոնք իրենց աշխատանքով արժանի ավանդ են մուծում ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության, գիտության և կուլտուրայի զարգացման գործում։

Մեծ Հոկտեմբերի ծնունդ հանդիսացող Սովետական Հայաստանի հաջողությունները սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման ասպարեզում՝ անհուն բերկրանքի և հպարտության զգացմունքով են լցնում հայրենիքից դուրս, օտար երկնակամարների տակ ապրող հայ աշխատավորների սրտերը։ Այդ հաջողությունները միաժամանակ գազազեցնում են իրենց գոյությունը դեռևս քարշ տվող դաշնակ ավանտյուրիստներին։ Մեր



երկրից դուրս շպրտված և իմպերիալիստական պետություններում ապաստան գտած՝ հայ ժողովրդի ոխերիմ թշնամի դաշնակները ատելով ատում են Սովետական Հայաստանը։ Վարձու ծառայության մեջ մտնելով օտարերկրյա իմպերիալիստների մոտ, խաղաղության և առաջադիմության այդ թշնամիները չեն դադարում Կոմունիստական պարտիայի և Հայաստանի աշխատավորների հասցեին լուտանք թափելուց։ Եթե համաշխարհային երկրորդ պատերազմի տարիներին նրանք լծվել էին ֆաշիստական Գերմանիայի մարտակառքին և նրանց սվինների օգնությամբ փորձում էին վերադառնալ Հայաստան ու նորից վերականգնել այնտեղ բուրժուական կարգեր, ապա այժմ, որպես ամերիկա-անգլիական իմպերիալիստների գործակալներ նրանք նոր համաշխարհային պատերազմի պրոպագանդա են մղում, նոր դավեր են նյութում Հայաստանը ամերիկյան գաղութի վերածելու համար։ Սակայն իմպերիալիզմի գործակալների բոլոր պլանները դատապարտված են ձախողման։

Սովետական մեծ Միության անբաժան մասը կազմող Սովետական Հայաստանը դարձել է այն ձգողական կենտրոնը, լուսա-

պայծառ ջահը, որին հառած են Սփյուռքի
հայ աշխատավորության հայացքները։
22. Սովետական պետությունը ամենադե-
մոկրատականն է աշխարհում։ Սովետական
դեմոկրատիան Հոկտեմբերյան Սոցիալիս-
տական Մեծ ռևոլյուցիայի արգասիքն է, այն՝
նոր, ավելի բարձր տիպի դեմոկրատիա է և
արմատապես տարբերվում է բուրժուական
կեղծ, կիսատ-պռատ դեմոկրատիայից։ Սո-
վետական դեմոկրատիան, ամենից առաջ,
դեմոկրատիա է աշխատավոր մասսաների
համար։ Դրա վառ ապացույցն այն է, որ
ՍՍՌՄ աշխատավորների դեպուտատների
տեղական Սովետներում ընտրված են ավելի
քան մեկ և կես միլիոն մարդ՝ մեր երկրի
բանվորների, գյուղացիների, ինտելիգեն-
ցիայի լավագույն ներկայացուցիչները։ Հայ-
կական ՍՍՌ Գերագույն Սովետում և աշխա-
տավորների դեպուտատների տեղական Սո-
վետներում ընտրված են ավելի քան 13.000
մարդ։
Սովետական դեմոկրատիայի ծավալման
գործում խոշոր նշանակություն ունեն այն
միջոցառումները, որ ՍՄԿՊ XX համագումա-
րի որոշումների ոգով կիրառում է Կոմունիս-
տական պարտիան էկոնոմիկայի և կուլտու-
րայի ղեկավարման գործում միութենական



ռեսպուբլիկաների իրավունքների ընդլայն-
ման ուղղությամբ։ Այդ միջոցառումներն է՛լ
ավելի մեծ հնարավորություն են ընձեռնում
բոլոր միութենական ռեսպուբլիկաների և
ՍՍՌՄ բոլոր ժողովուրդների նախաձեռնու-
թյան ու ստեղծագործական ուժերի զար-
գացման համար, ամրապնդում են նրանց եղ-
բայրական բարեկամությունն ու համագոր-
ծակցությունը։

23. Ռեսպուբլիկայի աշխատավորության
պայքարը կազմակերպում և գլխավորում է
Հայաստանի Կոմունիստական պարտիան՝
Սովետական Միության Կոմունիստական
պարտիայի հավատարիմ ջոկատներից մեկը։
Ուժեղացնելով կապը մասսաների հետ, քըն-
նադատության և ինքնաքննադատության մի-
ջոցով մինչև վերջ բացահայտելով ժողովըր-
դական տնտեսության և կուլտուրայի զար-
գացման բնագավառում տեղ գտած թերու-
թյունները, Հայաստանի պարտիական կազ-
մակերպություններն է՛լ ավելի սերտորեն են
համախմբվում ՍՄԿՊ Լենինյան Կենտկոմի
շուրջը, մոբիլիզացնում են աշխատավորու-
թյան բոլոր ուժերը՝ ՍՄԿՊ XX համագումարի
պատմական որոշումները, վեցերորդ հնգամ-
յակում ռեսպուբլիկայի առջև դրված խնդիր-
ները հաջողությամբ կենսագործելու համար։

Հայաստանի Կոմունիստական պարտիան, բոլոր աշխատավորները լիովին հավանություն տվեցին ՍՄԿՊ Կենտկոմի 1957 թվականի Հունիսյան պլենումի որոշումներին, միահամուռ դատապարտեցին Մալենկովի, Կագանովիչի, Մոլոտովի հակապարտիական խմբի ու նրանց հարած Շեպիլովի պառակտչական, ֆրակցիոն գործունեությունը։ Այդ խմբի մերկացումը նորից ցուցադրեց Կոմունիստական պարտիայի և սովետական ժողովրդի սերտ միասնությունը, է՛լ ավելի բարձրացրեց պարտիայի հեղինակությունը մասսաների մեջ։

Սովետական Հայաստանի աշխատավորները մեծ բերկրանքով են պատրաստվում նշելու Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի պանծալի 40-ամյակը։ Օրըօրին ավելի է ծավալվում ստեղծարար սոցիալիստական մրցությունը ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկություններում, կոլտնտեսություններում, սովխոզներում, մեքենա-տրակտորային կայաններում, տրանսպորտում և ժողովրդական տնտեսության մյուս բնագավառներում։ Հայաստանի բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը և ինտելիգենցիան, Կոմունիստական պարտիայի գլխավորությամբ, ջանք չեն



խնայում ՍՄԿՊ XX համագումարի կողմից առաջադրված հոյակապ խնդիրները կենսագործելու, ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության և կուլտուրայի հզոր վերելքն ապահովելու համար։ Մեծ Հոկտեմբերի հաղթական դրոշը նոր, ավելի պայծառ ու հոյակապ հեռանկարներ է բաց անում ինչպես ՍՍՌՄ բոլոր ժողովուրդների, այնպես էլ հայ ժողովրդի առջև։

Հայաստանի աշխատավորները ջերմորեն հավանություն են տալիս և պաշտպանում են Կոմունիստական պարտիայի ու Սովետական կառավարության խաղաղասիրական արտաքին քաղաքականությունը, ակտիվ մասնակցություն են ունենում այն մեծ պայքարին, որ մղում են Սովետական Միության ժողովուրդները ամբողջ աշխարհում կայուն ու երկարատև խաղաղության համար։

Սերտորեն համախմբված Կոմունիստական պարտիայի և նրա Լենինյան Կենտրոնական Կոմիտեի շուրջը, Սովետական Հայաստանի աշխատավորները, ՍՍՌՄ ժողովուրդների մեծ ընտանիքում, ընթանում են առա՛ջ, դեպի կոմունիզմի լուսաշող գագաթները։

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ
ԵՎ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ
ՍՄԿՊ ԿԵՆՏԿՈՄԻՆ ԿԻՑ ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄԻ
ԻՆՍՏԻՏՈՒՏԻ ՀԱՅԿԱԿԱՆ ՖԻԼԻԱԼ

# ԵՐԿՐԻ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԱՐՀԵՍՏԱԿԱՆ ԱՐԲԱՆՅԱԿԸ

1957 թվականի հոկտեմբերի 4-ին Սովետական Միությունում արձակվեց երկրի առաջին արհեստական արբանյակը։ Դա մի խոշոր իրադարձություն էր, որը ցնցեց ամբողջ աշխարհը։ Այդ փաստը մի անգամ ևս ցուցադրեց սովետական գիտության զարգացման բարձր աստիճանը և կապիտալիզմի նկատմամբ սոցիալիզմի ունեցած վիթխարի առավելությունները։

Ի՞նչ կառուցվածք ունի և ի՞նչ նպատակով է բաց թողնվել երկրի սովետական արհեստական արբանյակը։

Արբանյակն ունի գնդի ձև, որի տրամագիծը հավասար է 58 սանտիմետրի, իսկ քաշը՝ 83,6 կիլոգրամի։ Արբանյակի կորպուսը պատրաստված է ալյումինի համաձուլվածքներից։ Կորպուսի մեջ է տեղավորված արբանյակի ամբողջ ռադիոապարատուրան էներգետիկ սնման աղբյուրների հետ միասին։ Կորպուսի վերին մակերեսի վրա ամրացված են 4 անտենաները, որոնք մետաղյա ձողեր են 2,4 մետրից մինչև 2,9



մետր երկարությամբ։ Արբանյակը դուրս բերելու ժամանակ անտենայի ձողերը սեղմված են հրթիռի կորպուսին։

Արբանյակն իր շարժման ընթացքում ենթարկվում է փոփոխական ջերմային ներգործությունների՝ Արևի տակ տաքանում է, իսկ Երկրի ստվերի մեջ շարժվելով՝ խիստ սառչում։ Արբանյակի ապարատների աշխատանքը ևս ջերմություն է արտադրում։ Որպեսզի արբանյակի ներսում գտնվող ապարատուրան չփչանա, պետք է այնտեղ պահպանվի կայուն ջերմաստիճան։ Այդ ապահովվում է նրանով, որ արբանյակի մակերեսին տրվում են արեգակնային ռադիացիայի ճառագայթմանը և կլանմանը համապատասխան գործակիցներ և արբանյակի ներսում կատարվում է ազոտի հարկադրական շրջանառություն։

Արբանյակի մեջ տեղավորված է 2 ռադիոհաղորդիչ, որոնք անընդհատ ազդանշաններ են ճառագայթում։ Այդ ազդանշանները հեշտությամբ են ընդունվում ռադիոսիրողների ռադիոընդունիչների միջոցով (ալիքների երկարությունը հավասար է համապատասխանորեն 15 և 7,5 մետրի)։

Արբանյակի կլոր գունդը տեղավորված է արբանյակը կրող հրթիռի առջևի մասում և փակված է պաշտպանական կոնով։ Հրթիռը արբանյակի հետ բաց թողնվեց ուղղահայաց կերպով։ Կարճ ժամանակ անց, ծրագրային սարքի օգնությամբ, հրթիռի առանցքը սկսեց աստիճանաբար շեղվել ուղղահայացից։ Դեպի

ուղեծիրը դուրս գալու հատվածի վերջում հրթիռը գտնվում էր մի քանի հարյուր կիլոմետր բարձրության վրա և շարժվում էր երկրագնդի մակերեսին զուգահեռ՝ մի վայրկյանում 8 հազար մետր արագությամբ։

Հրթիռի շարժիչի աշխատանքն ավարտվելուց հետո, պաշտպանական կոնը ցած գցվեց, արբանյակը բաժանվեց հրթիռից և սկսեց շարժվել ինքնուրույն կերպով։

Արբանյակի ուղեծիրը առաջին մերձեցման ժամանակ ներկայացնում է մի էլիպս, որի ֆոկուսներից մեկը գտնվում է Երկրի կենտրոնում։ Արբանյակի թռիչքի բարձրությունը երկրի մակերեսից կայուն չի մնում, այլ պարբերաբար փոխվում է, հասնելով միջագույն չափի՝ մոտ հազար կիլոմետրի։ Ներկայումս ուղեծիրի պերիգեյը (նրա ամենացածր կետը) գտնվում է Երկրի հյուսիսային կիսագնդում, իսկ ապոգեյը (ուղեծիրի ամենաբարձր կետը)՝ հարավային կիսագնդում։

Ժամանակի ընթացքում, երկրի մթնոլորտի վերին շերտերում արբանյակն արգելակվելու հետևանքով, նրա ուղեծիրի ձևն ու չափը աստիճանաբար կփոխվեն։ Մթնոլորտի ավելի թանձր շերտերը մտնելիս արբանյակի արգելակումը չափազանց կուժեղանա, արբանյակը կշիկանա և կայրվի։



Ներկայումս արբանյակի մեկ պտույտի ժամանակամիջոցը կազմում է 96 րոպե։

Այժմ ՍՍՌՄ-ում պարբերաբար արբանյակի դիտարկումներ են կատարում օպտիկական դիտարկումների 66 կայան և ԴՕՍԱԱՖ-ի 26 ակումբ՝ ռադիոդիտարկման բազմաթիվ միջոցներով։ Արբանյակը դիտարկում են նաև հազարավոր ռադիոսիրողներ։

Արբանյակում էլեկտրաէներգիայի պաշարները սպառվելուց հետո, այնտեղից եկող ռադիոազդանշանները դադարելու են։ Այդ ժամանակ արբանյակի դիտարկումը կկատարվի օպտիկական մեթոդներով ու ռադիոլոկատորներով։

Արհեստական արբանյակի բաց թողումը գիտական և պրակտիկ նշանակություն ունեցող մեծ և պատասխանատու նպատակներ է հետապնդում։ Նրա միջոցով ուսումնասիրվելու են մթնոլորտի վերին շերտերի ֆիզիկան և երկրի շուրջը գտնվող տիեզերական տարածությունը։ Արբանյակի աշխատանքի ծրագրի մեջ են մտնում նաև իոնոլորտի վիճակի, նրա քիմիական կառուցվածքի ուսումնասիրությունը, ճնշման և խտության չափումները, մագնիսային չափումները, ուսումնասիրվելու են նաև Արևի և տիեզերական ճառագայթների բաղադրությունն ու հատկությունները և շատ ու շատ այլ, մինչև այժմ չպարզաբանված հարցեր։

Սովետական գիտնականները և ինժեներները լուրջ աշխատանք են տանում գեոֆիզիկական տարվա ըն-

թացքում Երկրի մի շարք արհեստական արբանյակներ բաց թողնելու ուղղությամբ։ Այժմ կարևորագույն խնդիրը կայանում է նրանում, որպեսզի բաց թողնվեն ավտոմատ ղեկավարում ունեցող արբանյակներ, որոնցով հնարավոր կլինի դեպի տիեզերական տարածությունները ուղարկել զանազան կենդանիներ։ Այդպիսի արբանյակները հնարավորություն են ունենալու նորից դեպի երկիրը վերադառնալու բոլորովին անվնաս վիճակում։

Բայց արդեն այս առաջին արբանյակի բաց թողումը գերազանցեց մարդկային ամենահանդուգն մտահղացումները։ Այս լուրը շանթի պես հարվածեց ամենից առաջ ամերիկացիներին, որոնք համոզված լինելով, թե Սովետական Միությունը դեռ շատ հեռու է նման փորձարկումներից, աջ ու ձախ փառաբանում էին իրենց նախագծած արհեստական արբանյակը, որը դեռ պետք է բաց թողնվի ոչ շուտ, քան 1958 թվականի գարնանը։

Արհեստական արբանյակի բաց թողումը ֆրանսիական «Կոմբա» թերթը գնահատում է, որպես «գիտական մրցության մեջ Սովետական Միության մեծ հաղթանակը ԱՄՆ-ի նկատմամբ»։ Այդ նույն միտքն է արտահայտում նաև հենց ամերիկյան «Նյու Յորք ուորլդ տելեգրամ էնդ Սան» թերթը. «Երկրի ռուսական արբանյակի բաց թողումով,— գրում է թերթը,— վրա է հասնում նոր դարաշրջան։ Ռուսները շահեցին մրցությունը»։ Ամերիկյան մի ուրիշ ազդեցիկ թերթ՝ «Նյու Յորք Թայմսը» գրում է. «Սովետական Միությունը տիեզերա-



կան տարածության մեջ մի ահռելի քայլ կատարեց, մի քայլ, որը գերազանցում է այն, ինչը մտադիր էին անել Միացյալ Նահանգների գիտնականները։ Շուտով երեկոյան կամ առավոտյան աստղը, որը կերևա Միացյալ Նահանգների երկնքում, կլինի կարմիր աստղ, որը պատրաստված է Մոսկվայում»։

Երկրի սովետական արհեստական արբանյակի բաց թողումը մեր գիտնականների և ինժեներների մեծ նվերն է մեր Հայրենիքին՝ Հոկտեմբերի 40-ամյակի տոնակատարության նախօրյակին։ Այդ փաստը հատուկ կերպով է ընդգծում այն, թե ինչի են ընդունակ գիտությունը և նրա զարգացման համար աշխատող մարդիկ, երբ նրանք ազատ են կապիտալիստական ամեն տեսակ կապանքներից։

---

## СОДЕРЖАНИЕ



Խմբագիր՝ Վ. ԲՋՆՈՒՆԻ

